# ՀՐԱՒԷՐ
# ՄԻՈՒԹԵԱՆ

ՆԱՄԱԿ Ա.





Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
1869

ՀՐԱՒԷՐ

# ՄԻՈՒԹԵԱՆ

ՆԱՄԱԿ Ա.



Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

1869.

Յիսուս կաղաչէ Հօր Աստուծոյ՝ որ հաստատ պահէ իր առաքեալները միութեան և ճշմարտութեան մէջ՝ ըսելով. ով Ս. Հայր՝ քու անունովդ պահէ անոնք՝ որ դուն ինձ տուիր։ Որպէս զի մէկ ըլլան, ինտոր որ մենք մէկ ենք։ Սրբէ անոնք քու ճշմարտութիւնովդ, քանզի քու խօսքդ ճշմարտութիւն է։ Եւ անոնց համար ես իմ անձս կը սրբեմ, որ իրենք ալ ճշմարտութիւնով սրբուած ըլլան։ Որ ամէնն ալ մէկ ըլլան. ինտոր որ դուն՝ ով Հայր, իմ մէջս, ու ես քու մէջդ՝ որ անոնք ալ մեր մէջը մէկ ըլլան։ Որպէս զի աշխարհս հաւատայ՝ թէ դուն խրկեցիր զիս։ Յովհ. ԺԷ։

# ՆԱՄԱԿ ՍԻՐՈՅ

## ԱՌ ԼՐՈՒԹԻՒՆ

## *ՀԱՅՈՑ ՈՂՋԱՄՏԱՑ*



*Աւելորդ կը համարիմ յիշեցնել ձեզ թէ մենք սկիզբէն այս ժողովուրդին հովիւներէն կամ Հայրերէն մէկը սեպուած ենք. որչափ ալ մեր կամքին և հաճութեանը դէմ եղած ըլլայ այդ կոչումը կամ անունը մեր վրայ կրելու, ուստի ՚ի հարկէ ստիպեալ պարտք սեպեցի այս անգամ այս ծերութեան հասակիս մէջ սիրայորդոր նամակագրութեամբ ձեր տեսութիւնը վայելել. որպէս զի այնու գէթ կարողանամ թէ ձեր առ Աստուած և առ ընկերն ունեցած պարտականութիւնը ձեզ յիշեցնել և թէ իմ առ ձեզ ունեցած պարտքս ըստ կարի վճարել։*

*Որովհետև մեր ամենուն խորհուրդն ու դիտաւորութիւնը առաջադրութեամբ բուն իսկ բարեկարգութիւնն էր. որուն գործադրութեանը ու յառաջադիմութեանը աջակցելու և միաբանութեամբ ջանասիրելու համար այսօր կը համարձակիմ խոնարհաբար հրաւիրել ձեր սիրելութիւնը, քաջայոյս և վստահ*

ըլլալով թէ անշուշտ պէտք բարեհաճիք յանուն մարդկութեան ձեր ազգակցաց բարելաւութեանը համար հոգածել և ազգասիրաբար բարեկարգութեան գործը յառաջ տանելու և իր նպատակին հասցնելու փոյթ և ջանք չի խնայել՝ ի շինութիւն Հայաստանեայց Լուսաւորչական Ս. Եկեղեցւոյ և ի փառս միակ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Սիրելիք, դուք արդէն գիտէք թէ մեր ազգին մէջ բարեկարգութեան գաղափարը նոր չէ. վասն զի մեր նախնեաց գրուածքներուն անգամ եթէ ուշադիր ըլլաք, պիտի տեսնէք թէ ձենէ առաջ որչափ փափաքողներ եղած են ազգային եկեղեցւոյն վերանորոգութեան և չատ բարեսէր անձինք ալ ժամանակ ժամանակ երևան ելլելով անկարգութեան և զեղծմանց դէմ բողոքած են։

Գէտ մօտ ատեններս մեր ծանօթներէն շատերը գիտենք. որոնք բարեկարգութեան համար քանի՜ տառապանք և նեղութիւն, աքսոր և հալածանք կրելով յետին թշուառութեան մէջ կնքեցին իրենց այս առօրեայ կեանքը։

Թողունք յիշել հոս Պօլսոյ քարոզիչներէն Գրիգոր վարդապետը, Երուսաղեմի Միաբաններէն Եգշէհիրցի Յակոբ և Եգիպցի Դիոնէսիոս Արքեպիսկոպոսները իրենց ընկեր-

ներով, Ս.Էջմիածնայ միաբաններէն Շահնա-
զարեան Կարապետ վարդապետը, Ամասիոյ քահանաներէն Տիգրանը օղլու անուն Եւա-գերէցը. Ասոր Միաբաններէն Յովհաննէս վարդապետը. որ այս վերջինը բաւական հալածանք կրելէն յետոյ Մառաշ քրիստոնէի մը տուն պատսպարուելով կ'սկսի ժամագործութեան արհեստով իր օրական պարէնը հայթայթել ։

Չենք ուզեր զանցընել հոս նաև Պալատ-ցի Գէորգ, Խոտավէրդի, փէշտիմալճի Գրիգոր, Զափրաստճեան Միաչեան, Փիլի-զա Պօղոս, Ընթացի Մուրատ, Եօլանեան Թագւոր գիտնական և հռչակաւոր վարժապետները, որոնք Հայաստանեայց եկեղեցւոյ պատուոյ և իրաւանց և նորին Առաքելական կարգաց և կանոնաց նախանձախնդիր ըլլալով Պապական և Յունական նախապաշար մոլորութեանց դէմ բողոքելնին շատերուն յայտնի է. և թէոր մանրամասն որոնելու ըլլանք տակաւին շատերը պիտի գտնենք զոհուած յանուն մարդկութեան, բռնակալ իշխանութեան ձեռքով ։

Դուք ինքնին կըվկայէք՝ որք ցանկ կայիք ի փորձութիւնս իմ թէ որչափ հալածանք և աքսորներ կրեցի և միթէ՞ դուք զուրկ մնացիք անկէ քաւ լիցի բայց վերջապէս նախախնա-

մութիւնք գոնէ փոքր 'ի շատէ ձեր ջանքը պը-սակեց բռնակալին գերութենէն ազատելով ազգապետութեան միջոցաւ ։

Մեր դժգոհութիւնք ու բողոքը չէ թէ մեր բնիկ ազգային եկեղեցին քաւ երբէք , այլ նորա մէջ սպրդած Աւետարանի ոգւոյն և սկզբանց հակառակ իշխանական բռնութեան և անոր միջոցաւ մուտ գտած միջնադարեան մոլորութեան դէմ էր ․ վասն զի շատերուն գիտցածն է նախ թէ մերս Հայաստանեայց Լուսաւորչական Ս. եկեղեցին իր քրիստոնէական հաւատոյ վարդապետութիւնք Սրբազան Առաքեալներէն և սուրբ Լուսաւորիչէն ընդունած օրէն հետէ , նոյնը մինչև ցայսօր պահած է Ս. Աւետարանին հոգենորոգ վարդապետութեանը համաձայն ․ որոնք Լուսաւորչեան հանգանակին մէջ ամփոփուած են , զորս մի առ մի յիշել հոս աւելորդ կը սեպեմ ։

Երկրորդ դեռ այսօր ամէն Հայ անհատ կը վկայէ թէ Հայաստանեայց Լուսաւորչական եկեղեցին միմիայն երեք Տիեզերական ժողովները կը ճանչնայ հոգեգումար Ս. Ժողով ․ այն է Նիկիոյ , Եփեսոսի և Կոստանդնուպօլսոյ ․ իսկ ուրիշ ժողով ըսուածները ․ որոնք երկնայինը՝ երկրայինին հետ շփոթեցին ․ զեղծում , ատելութիւն , հերձուած և բաժանում ձգելով և միմիայն Ընդհանուր և Առաքելա-

կան եկեղեցւոյ ճշմարիտ գլխոյն Քրիստոսի հետ միացած և Աւետարանին իրաւասութեանը ներքև Ս. սրոյն ուխտովը կապուած քրիստոնէական մարմինը մաս մաս կտրատելով նախատինք բերին եկեղեցւոյն. անանկ ժողովները բոլորովին հերքած է և կը հերքէ։

Պատմութիւնն ու ազգային իսկ մատենագրութիւնները կը ցցնեն թէ մեր Հայոց եկեղեցին 'ի սկզբան մեծ զգուշութեամբ վարուեցաւ և երկար ատեն դիմադրեց Ս. գրոց հակառակող անիրաւ վճիռներուն և սուտ վարդապետութեանց և տիրապետական իշխանութեան դէմ. սակայն յետոյ մեր հոգւոյ թըշնամին ամէն հնարք և խորամանկութիւն բանեցնելով կարողացաւ վերջապէս գաղտագողի իր չար որոմը բարի սերման մէջ խառնելու։

Քանզի յունական և պապական բռնութիւնը մանաւորաբար մեր ազգին ետեւէն այնքան ինկաւ մինչև յաջողեցաւ իր լարած որոգայթին մէջ գլորել և անոր փառքը հիմն 'ի վեր տապալել. և պատմութիւնն անգամ կը վկայէ թէ երբ մեր ազգային ուսումնարաններն ու որբանոցները անապատանալով և իրենց բուն նպատակէն շեղելով օտար գաղափարի սկսան ծառայել, ան ատեն տգիտութիւնը համաճարակ ծաւալեցաւ և անմիաբանութիւնը տիրեց և չգէտք յառաջ գալով

թուլամորթ, վատ և չահամոլ պապամոլ և յունամոլ անձանց միջոցաւ մուտ գտաւ Հայոց եկեղեցւոյն մէջ օտար վարդապետութիւններն ու եղծումները. որոնք հաւատքը շփոթեցին, սէրը թուլացուցին, բարոյական ազնիւ զգացումը տկարացուցին. արթնութիւնը թմրեցուցին, և միութիւնը և վարքն ու բարքը կերպարանափոխ ըրին և վերջապէս մեծ հարուած մը տալով ազգին աւելի թըշուառութեանը պատճառ եղան:

Այլ այսու ամենայնիւ գոհ ըլլանք Նախախնամութենէն՝ որ գոնէ մեր նախնեաց Աստուածպաշտական աղօթքները, երգերն ու մաղթանքները և բարի սովորութիւնները գրով աւանդուած կան և կը մնան մինչև ցայսօր Տիրոջ ողորմութիւնով. և թէ որ ողջամիտ և բարեսէր անձինք կուզեն իմանալ և անոնց մէջ սպրդած եղծումները տեսնել, կը համարձակիմ ըսել թէ առանց Ս. գրոց առաջնորդութեան կրնան հասկնալ և մեզի հետ բարեկարգութիւն գոչել այդ մասին ալ:

Հնագիտաց պարզապէս յայտնի է թէ չատ դարերէ հետէ բարեկարգութիւն կանչողներուն դէմ կղերին յարուցած հալածանաց պատճառաւ Հայոց մեծ մասը իր կրօնքն ու ազգութիւնը կորսնցուց. Նա մանաւանդ Թոնդրակեանք, Արշակունիք, Արշաունիք,

Պալհաւունիք, են են․ որոնք Ռուբինեանց ատեն 16,000,000 կը կազմէին և եղծմանց ու անկարգութեանց դէմ բողոքելովին բաւական հալածանք կրելէն զկնի օտար ազգաց մէջ խառնուելով և շատերն ալ վրանաքնակ ըլլալով օտարացան խոպառ․ որոնք այսօր Թուրքմէն, Աֆշար, Ըշվան, են կը կոչուին․ իսկ ազգին հարուստ ու ազնուական մասը Եւրոպա գաղթելով Գերմանիա եւ Իտալիա լեցուցած են։

Ահա այսօր ալ դժբաղդաբար նոյնը կը տեսնենք մնացած Հայոց մասին յետադէմ տխուր և խարխուլ վիճակը և ով չգիտէր թէ կղերին և միայն անապագայ կղերին ագիտութեան և յամառ կամակորութեան երեսէն․ որովհետև ազգային մտաւորական անդաստանը թէև անմշակ և խոպանացեալ եղեր, որ միմիայն փուշ եւ տատասկ բուսցնել գիտէ, կրօնաղուրկ չքոտի կղերին կոյր նախանձու ատելութեան եւ հակառակամտութեան ոգւոյն եւ կրից գործիք ու խաղալիկ ըլլալով նորին բռնաւոր իշխանութեան ներքեւ կը ճնշուի և անկարող է տակաւին անկէ ազատիլ և դեռ նոյն ոգին է՝ որ ազգին երկու մասերուն վերայ կը գահակալէ Ս. Աւետարանի ոգւոյն դէմ․ ուրով եւ գայթակղութիւնը սկսած է աճիլ եւ շատերուն սրտին վերայ ծանրանալ։

Մասն զի երբ անգէտ մէկը կղերին՝ Աւետարանին հակառակ բռնած ընթացքը եւ նորին վարքն ու բարքը նկատէ, պակասութիւնը կրօնքին տալով պիտի գայթակղի և անտարակոյս անտարբերութեան ազգակործան խորխորատը պիտի գլորի. որովհետեւ Ս. գրոց իմաստին հմտութիւն և կրօնագիտութեան վերահասութիւն եւ քրիստոնէական կատարելութեան այն է մարդկութեան պարտուց եւ իրաւանց սկզբանցը վրայ կատարեալ գաղափար չունենալով եւ փոխանակ կղերին՝ կրօնքին հետ ունեցած անհամաձայնութիւնը տեսնելու եւ պատճառը միայն դուրս ձգել խորհելու քան կրօնքը. հարկաւ կրօնքին վրայ պիտի չփոթի. այլ օրհնեալ է Տէրը՝ որով այսօր շատերուն ծանօթ եղած է թէ գայթակղութեան քարը կամ առիթը կղերն է և նորին ամուր բռնած ու պաշտած տիրապետական դրութիւնն (աշխարհական իշխանութիւն) ու մոլար և սուտ վարդապետութիւնն է յորոց զգուշանալ և արթուն կենալ կը պատուիրէ սուրբ Աւետարանը և գայթակղութեան պատճառ եղողներուն ալ վայ կը կարդայ. Մատթ. ժ:

Արդի Հայ կղերը ինքնագլուխ ուխտազանց և պարտազանց գտնուելով իր պաշտօնին մէջ, անանկ գործով մը կ՚զբաղի. որ եր-

բէք իրեն չվերաբերիր և որով թէ իրեն և թէ եկեղեցւոյն աւելի նախատինք բերած է քան պատիւ. և ասիկայ ալ կղերին պաշտօնին վերայ հսկող աչքոյն և հոգեւոր ու միանգամայն օրինաւոր տեսչութեան կամ տընտեսութեան մը պակասութենէն յառաջ եկած է և կուգայ և որուն դէմ բան խօսողը մեծ դատապարտութիւն և հալածանք կրած է և կըկրէ. բայց ինչև իցէ մենք թողունք հիմա այս կէտը և անցնինք մեր բուն խնդրոյն։

Արդարև Հայոց եկեղեցւոյն մէջ մինչև ցայսօր բարեկարգութիւն կանչողները անդատապարտ չմնացին. ինչպէս վերը ըսինք միայն տգիտութեան ու չարութեան երեսէն. այլ այսօր Նախախնամութիւնը անանկ դարու մը հասուցած է մեզի, որուն լուսաւոր և դար ազատութեան կանոնանեն շնորհիւ մեր Օսմանեան արդարասէր և ազատասէր կայսեր։

Ասկէ առաջ նոր աշխարհքէն այցելու կամ քարոզիչներ (միսիոնար) գալով ամենէն առաջ մեր ազգային եկեղեցին գտան անկեղծ քրիստոնեայ թէ և նախապաշարման խաւարին ներքև որուն մէջ սկսան իրենց նպատակին յարմար գործել ամենայն ճգամբ և այն ՚ի շահ ինքեանց և ՚ի վնաս ազգին։

Նախապէս մեր Հայոց երևելիներէն (կը-

ղեր և աշխարհական) մեծ ընդունելութիւն գտնելով իբրև ազգին լուսաւորութեանն ու յառաջադիմութեանը ձեռնտու և օգնական սկսան երթևեկութիւն ընել 'ի օկջըքան բարեկամական սիրոյ յարաբերութեամբ. բայց անոնց մէջ Մինէճի Ենդրանիկ աղայն իր ընկերներով և ուրիշներ այն կարծուած այցելուներուն բռնած ընթացքէն նպատակնին հասկնալով խիկոյն պաղեցան և հեռացան անոնցմէ :

Սակայն արդէն ազգին մէջ գոյացած և զօրացած պաշտպանութեան ջատագով և պաշտպան կուսակցութիւնը՝ ազգին ինքնուրոյնութեանն ու լուսաւորութեանը թշնամի ըլլալուն համար ասանկ պարագայի մը մէջ պէտք եղած միջոցը ձեռք առած սկսաւ մեքենայել. ուստի թէ յիշեալ կուսակցութեան ունեցած այս ատելութիւնը և թէ միսիոնարաց բռնած ընթացքն ու վարմունքը մեծ գրգիռ մը հանեցին բոլոր հասարակութեան փափաքած բարեկարգութեան դէմ և անոր արգելք և խափանարար ըլլալէ զատ պատճառ եղան նաև հալածանքին :

Օյիրաւ ի հալածանքին կայծը Պատրիարքարանէն դուրս ցաթկեց, սակայն պատճառը Մատթէոս Պատրիարքը չէր. ինչպէս մեր մէջէն ոմանք այնպէս կարծել ուզեցին այլ ինչ-

պէս վերը ըսինք երկու յիշեալ կուսակցութեանց իրար ընդհարումն էր։ Պատրիարքը ներքին համոզմամբ փափաքող էր բարեկարգութեան, բայց անկարող եղաւ ճշմարտութեան և արդարութեան ասպարէզին մէջ երևնալ. նախամեծար համարեց մարդկօրէն մտածութեամբ իր Պատրիարքական իշխանութիւնը քան բարեկարգութիւնը. աւելի իր մասնաւոր շահը ընդհանուրին շահէն վեր բռնել խորհելով. այս մասին թէ որ հարկը պահանջէ, պատրաստ եմ բացարձակ կերպով գրել։

Քանզի Պատրիարքը անանկ հաւատոյ հանգանակ մը ներկայացուց ժողովրդեան՝ որ իր խղճին ալ դէմ ըլլալը իր սրտին անգամ կը վկայէր, և Նիկիոյ հանգանակէն դուրս հանգանակ ներկայացնող Եպիսկոպոսին նզովքի տակ իյնալ և կարգէն լուծուիլ հարկադրող երկու ժողովներուն վճիռը իր խիղճը կը տանջէր. (տե՛ս Տիեզերական Ժողովոց պատմութեան մէջ). այլ և իցէ ունայն մտածութեամբ ճիզվիթութենէ յաղթահարուած զիջաւ մոլորութեանց ինչպէս որ Պատրիարքական (պապական) իշխանութիւնը կը պահանջէ. և ո՞վ չէր գիտեր և յայտնի իսկ էր թէ պապական կուսակցութիւնն էր զայն յօրինողը առաջնորդութեամբ մեծաւորին ճիզվիթաց. զոր ընդունելու համար անհաւատի մը անգամ, թող

թէ ողջամիտ և արթուն ժողովրդեան մը՝ անհնարին և անկարելի բան էր առանց ճշմարտութիւնը ուրանալու և խիղճը արատաւորելու։

Արդարև այդ բանը մեր ամենուն զարմանքը խիստ շարժեց երբ Հայաստանեայց եկեղեցիին մինչև ցայն վայր չլսած և չտեսած հաւատոյ հանգանակ մը երևան ելաւ, վերջապէս պատրիարքական կամ կղերական ճիզվիթութիւնը միայն կրնար զանի ընդունել. ինչու համար, վասնզի արդի հայոց կղերը մի միայն ներկայ իր առօրեայ մարմնաւոր շահը մտածել գիտէ. բայց ժողովուրդը անանկ չէ, նա միշտ հաւատով և յուսով ներկայն ու ապագայն միանգամայն մշտնջենաւորն ու հոգևորը մէկտեղ կը խորհրդածէ, նա առժամանակեայ և յաւիտենական կենաց պիտոյքը այժմէն հոգածել գիտէ. և միանգամայն ըստ հաւատոց պարտական կը ճանչնայ ինքզինք և կարի իսկ իրաւամբ. վասն զի այն որ կենդանի հոգի կըկրէ Քրիստոսի հաւատքով և ընտանիք ու զաւակներ ունի՝ ապագայ մտածել ունի, իսկ այնոր տոնք չունի, ապագայ մտածել չունի, և անոր որ խորհրդածութիւնը հոգևոր և յաւիտենական չէ, կենդանի չէ՝ ըստ գրոց։

Արդ կը հարցնեմ, ո՞ւր կրնար երթալ կամ որու դիմել այնքան բողոքողներուն բազմու-

թիւնը՝ երբ բռուն զօրութեամբ Աղօթատեղի-ներէն դուրս ձգուեցան. Կաթուղիկոսական Տեսչութիւնն անգամ անտարբեր և սոսկ հանդիսատես դառնուեցաւ. ով պիտի տեսնէր դատը և իրաւունք ընէր զրկելոց. Նա ալ գուցէ Պոլսոյ քաղաքական Պատրիարքութեան կամ իշխանութեան անգութ և անխիղճ շարժմանցը դիմադրել կամ ազդեցութիւն բանեցընել անկարող էր ինչպէս ցայսօր, ուստի և հետեւապէս բնականաբար հարկը կը պահանջէր միսիոնարաց դիրկը դիմել և գոնէ առժամանակեայ կերպով ցցուցած — դրութեանը — հետեւիլ. որն որ երիցականութեան և ժողովականութեան խառնուրդ մ'է.

Հոս երիցական եկեղեցւոյն դաւանութեանը վերայ չենք ուզեր խօսիլ. սակայն նախապաշարմանց մասին գալով Ամերիկեան միսիոնարք Հայերուն կը գերազանցեն. և որոնք մեր ազգային եկեղեցւոյն կարգաց և կանոնաց և բարի սովորութեանց վերայ ոչ գաղափար ունին և ոչ իսկ ճանաչում.

Աւետարանին անուանը կազմուած Հայ Աւետարանական վերանորոգ եկեղեցին մեծ մասը հետզհետէ զգաց և իմացաւ փորձառութեամբ եղելութիւնները և վիճակը և ազգային եկեղեցիէն եկողներուն միսիոնարաց առջեւ հեթանոսական դարձ համարուիլը տես-

նելով ցաւ ՚ի սիրտ խոցեցաւ, ուստի և տխուր ազդեցութիւն ընելով շատերուն՝ թէ գրածախ, թէ քարոզիչ և թէ վարժապետ՝ որոնք ստիպուած էին ժամանակ մը իբրև գործակից միսիոնարներուն ծառայել, ձգեցին ծառայութիւննին և հեռանալով անոնցմէ սկսան արհեստից պարապիլ դէթ իրենց օրական պարէնը հայթայթելու համար։

Իսկ Ներսայու Հայոց Աւետարանական եկեղեցին իրաց այս տխուր և ցաւալի վիճակը տեսնելով իր առանձին տեսութեանը մէջ ունեցած սկզբունքն ու խորհուրդը լաւագոյն և կարևոր ընտրեց. վասն զի ՚ի սկզբանէ ունեցած դիտաւորութիւնն ու առաջադրութիւնը ուղղախոհ և անարատ ըլլալով կհամապատասխանէր իրօք այն արժանի և վայելուչ անուան. (այն է Հայաստանեայց Աւետարանական եկեղեցի կոչուելուն). զոր կազմութիւն առած օրէն որոշած էր. վասն որոյ իր այս հաստատ որոշմանը և պարտականութեանը համեմատ ժողով մը գումարեց. ուր եկեղեցւոյն վիճակը ու անոր ունեցած պարտականութիւնը մի առ մի ճառելէն վերջը յանձնաժողով մը ընտրելով արտօնութիւն տուաւ անոր յատակագիծ մը պատրաստել և եկեղեցիին ներկայացնել. Թէպէտ աս յանձնաժողովին անդամներէն ոմանք այս տեսութեան մէջ ան-

տարբեր գտնուեցան, բայց վերջապէս յատակագիծը պատրաստուեցաւ. որուն օրինակը ահա արժան և կարևոր կը համարիմ դնել հոս ողջամիտ եղբարց ուշադրութեանը համար։



## Ընդհանուր յատակագիծ Եկեղեցական կազմակերպութեան

### ըստ որոշման և առաջադրութեան Ներսոյս եկեղեցւոյն Հայոց Աւետարանականաց։

---

Ա

Բացարձակ և պարտաւորիչ հեղինակութիւն հաւատացելոց խղճին վերայ մի միայն Աստուածային պատգամն է, և ուստի իբրև քրիստոնէական մարմին մը՝ մեր հաւատոյ և վարուց մի միայն կանոնը նոյն ինքն Աստուծոյ յայտնեալ բանը՝ Հին և Նոր Կտակարանն է։

Բ

Մեր եկեղեցւոյ ինչպէս որ վարդապետական կամ Աստուածաբանական դրութիւնը անայլայլապէս Աւետարանական է, նոյնպէս և կազմակերպական դրութիւնը Աւետարանական է և հիմնեալ Հայաստանեայց Լուսա-

ուղղափառ եկեղեցւոյ կազմակերպական դրութեանը վերայ իբրև նորին բարեկարգեալ մասը. կանոն բռնելով բարեկարգութեան սկզբունքը այն է բարեկարգել նոյն եկեղեցին իւր դրութեանը մէջ Ռուսաստանու. և ուստի կը կոչուիմք — Հայաստանեայց բարեկարգեալ եկեղեցի —.

Գ.

Եկեղեցական պաշտօնէութիւնը Առաքելական է և առ մեզ կհասնի օրինաւոր յաջորդութեամբ, և ուստի Հայաստանեայց բարեկարգեալ եկեղեցւոյ մէջ հոգևոր պաշտօնէութեան նոյն կարգն ու սկզբունքը կը պահուի, ինչ որ ազգային եկեղեցւոյ մէջն է ՚ի նախնեաց անտի, միայն թէ հոգևոր հովիւներու համար գործածուած — քահանայ — բառին տեղ՝ յաւէտ — երէց — բառը ընտրած եմք. որ ազգային եկեղեցւոյ մէջ երկուքն ալ կը գործածուին նոյն կարգ պաշտօնէից:

Դ.

Հայաստանեայց բարեկարգեալ եկեղեցին՝ ըստ վաղեմի սովորութեան քրիստոնէական եկեղեցւոյ՝ կը պահէ բոլոր տէրունական տօները, ինչպէս է Տեառն մերոյ Ծննդեան և Մկրտութեան, Ս. Հաղորդութեան, Զատ-

կի, Համբարձման և Հոգեգալստեան յիշատակութիւնները․ ոչ վասն հրամանի, այլ վասն սիրոյ Փրկչին։

Ե

Աստուածային պաշտամունքը կը բաղկանայ չորս որոշ մասերէ, աղօթք, գոհաբանութիւն․ հոգևոր երգ, սաղմոսերգութիւնք։ Սուրբ գրոց ընթերցմունք։ և քարոզութիւն բանին կամ յորդորակ։ Սակայն ասոր ձեւն ու կարգադրութիւներն՝ նախնեաց կարգադրած գաղափարին վերայ հիմնեալ է, որքագրելով և կարգադրելով անոնցմէ աւանդուած — Շարականն — ու — Ժամագիրքը — և այլն․ հեղինակութիւն ունեցող օրինաւոր պաշտօնէութեան ձեռօք։

Զ

Հրապարակական պաշտամունքը ըստ գովելի սովորութեան նախնեաց մերոց կը կատարուի ամէն առաւօտ և երեկոյ։

Է

Հայաստանեայց բարեկարգեալ եկեղեցւոյ մէկ հիմնական սկզբունքն է — միութիւն — և ուստի տեղական մասնաւոր եկեղեցիք միայն այնքան անջատ և անկախ են իրարմէ, որքան

որ տեղեաց հեռաւորութիւնը բնականաբար կարգադրած է ։

Ը

Եկեղեցական հոգևոր տնտեսութեան կամ կառավարութեան և կարգադրութեանց հըսկողութիւնն ու հոգատարութիւնը 'ի պաշտօնէ եկեղեցականաց յատուկ գործն ու պաշտօնն է , սակայն աշխարհականք ալ իրաւունք ունին նոյն գործառնութեանց մէջ ըստ Առաքելական դրութեան ձայն և գործակցութիւն ունենալու օրինօք և կարգադրութեամբ ։

---

Այս տեսութիւնը՝ որ մեր ներքին համոզումն է խղճիւ իբրեւ սկզբունք արդէն շատ տարիներէ հետէ ընդունած և որդեգրած եմք ․ թէև արդեամբ գործադրելու մինչև ցարդ լիովին չեմք յաջողած ․ ըստ որում հարկաւոր եղած օրինաւոր տարերքներն ու միջոցները չեմք կրցած ունենալ ․ այսու ամենայնիւ հաւատոյ յուսով յանձնած եմք զանի Քրիստոնէական աշխարհին լուրջ ուշադրութեանը և վստահութեամբ կ'սպասենք անոր խրատուն և ձեռնտուութեանը ։

Բարեկարգութեան նկատմամբ Քրիստո-նեայ աշխարհքին (Անգղիոյ, Իրլանտիոյ, Ս-կովտիոյ, Գերմանիոյ, Հօլանտիոյ, Բրուսիոյ և այլն. Աւետարանաւ միացեալ Բողոքա-կան (եպիսկոպոսական) եկեղեցիին քանիւ և գրով մեզի ընծայած բարեկամական սիրայօր-դոր խրատը սա եղաւ թէ — Տիրոջ գործին մէջ յարատև ջանից պէտք ունիմք առանց որ և է ընկերութենէ նիւթական օգնութիւն սպասելու, և թէ ինքը պատրաստ է բա-րոյապէս օգնելու և պաշտպանելու թէ որ հարկը պահանջէ — . վասն զի Հայաստա-նեայց մեր ազգային եկեղեցին չէ թէ կրօնա-փոխութեան կամ եկեղեցափոխութեան, այլ սոսկ բարեկարգութեան կարօտ է ; և թէ որ նիւթական օգնութեան համար որ և է օտար ընկերութեանց դիմելու ըլլանք, ի հարկէ պիտի ստիպուինք անոնց հաճոյիցը գերիա-նալ. որով պատճառ պիտի ըլլանք ձեռնարկ-ուած բարեկարգութեան անյաջող վիճակի մէջ գլորուելուն և ձեռնարկողաց ամէն կողմէն շղթայակապ և կիսամեռ մնալուն. (ինչպէս որ այ. եղած է Ամերիկեան միսիօնարաց կողմէն):

Սիրտ հաճոյ թուեցաւ մեզ այս խրատը, և քաջ համոզուած եմք թէ Նախախնամու-թեան օգնութիւնը ամենէն նախամեծար ընտ-րելով և աջակցութեամբ սիրոյ և միութեան

ուխտին մէջ յարատևելով պիտի յաջողիմք անտարակոյս բարեկարգութեան վախճանին հասնիլ շուտով ՚ի փառս Աստուծոյ և ի վերակենդանութիւն Ազգին :

Թէպէտ Բերայու Հայոց Աւետարանական եկեղեցին դժբաղդաբար զանազան առիթներով և արգելքներով իւր առ ձեռն ունեցած յատակագիծը չկրցաւ ցայսօր ՚ի գործ դնել. սակայն յոյս ունիմք առ Քրիստոս թէ իր պահանջած սիրոյ և միութեան պտուղները առնուս սրտին և հոգւոյն ներգործութիւն և ազդեցութիւն ըրած ատեն, պիտի վերնան անշուշտ բոլոր խոչընդոտները և յայնժամ չէ թէ միայն մեր ազգային եկեղեցւոյն մէջ սէրն ու միութիւնը պիտի թագաւորէ և հաստատապէս բարեկարգութիւնը համատարած պիտի ծաւալի, այլև ընդհանուր Արեւելեան եկեղեցեաց մէջ ալ :

Թէ որ մէկը հարցնել ուզէ և որ արժան իսկ է թէ — Ամերիկեան միսիոնարաց ցցուցած գրութիւնը ի՞նչ ունի —. կը պատասխանեմ. — քու ազգային եկեղեցիդ ի՞նչ ունէր՝ որ անկէ բռնի դուրս ձգուեցար երբեմեռած մարմին մը —. գիտեմ ըսել իքը թէ՝ մայրենի հարազատ եկեղեցին չէր մեզի դուրս ձգողն ու հալածողը. այլ նորա մէջ մուտ գըտած բռնակալ իշխանութեան հարստահարիչ

ձեռքը և նորա հետ սերդած պապական և յունական նախապաշար մոլորութիւններն ու զեղծմունքներն էին. որ մեր եկեղեցւոյն հարազատ զաւակները հալածելու զբաղած են և կ'զբաղին դեռ ցայսօր 'ի կործանումն ազգին. և ուստի ցաւ 'ի սիրտ յակամայից բռնադատեալ ստիպուեցանք օտարին կարեկցութեանը դիմել և հաճոյիցը խաղալիք ըլլալ—:

Այո՛ այդ այդպէս է, բայց ինչու պատճառը չես հարցներ, ո՞չ ապաքէն անզգուշութիւնն էր և է, որ ամէն բարեմասնութեամբ ճոխացած մեր սեփհական մայրենի եկեղեցին այն այս յետին չքաւորութեան և թշուառութեան ճգնաժամին բերած հասուցած է և այն իր վերայ բռնի և յանիրաւի տիրապետողներուն ձեռքով. և մի՞թէ առանկ կրօնից ազատութեան լուսաւոր դարու մը միջոցաւ այն տգիտութեան սև ամպերուն ալ հետզհետէ փարատուիլը չտեսնելու համար աչքերնիս գոցե՞նք . . . :

Եղբարք ճշմարիտ կըսեմ թէ՝ մենք երբեք մեր ազգային եկեղեցին խպառ մոռնալու և բարձի թողի ընելու իրաւունք չունինք, մանաւանդ թէ պարտական իսկ ենք նորին արժանութեանն ու յառաջադիմութեանը ջանացիրել. թէև բռնակալութիւնը մեզի Յովնանու այն մեծ կիտին կեր ընել ալ մտաբե-

րէ և թող մտաքերէ միայն . . . մենք տուաւելևս պարտական ենք աղօթել թշնամւոյն համար և անձանձիր ջանք և փոյթ չխնայել մերս սեպհական մայրենի եկեղեցւոյն կարեկցելով և բարի օրինակ ըլլալով։

Օրհնեալ է Տէր որ շնորհիւ մեր Օսմանեան Տէրութեան մեր ոտքը Աւետարանին ճշմարտութեան ու խաղաղութեանը վերայ հաստատեց և բարեկարգութեան ասպարէզին ու ճամբուն մէջ դրաւ . ազատ և անկախ պատրիարքականն անուանեալ խառնաշփոթ պապական իշխանութենէն և զերծ ու ապահով նորա բռնաբարող , ճնշող և մարդասպան ճիրաններէն . և քանի որ մեր Օգոստափառ արդարասէր Տէրութիւնը իր բարձր հրովարտակաւ եկեղեցական բարեկարգութեան սկզբունքն ալ վաւերացուց , ազատ է այնուհետև ամէն ոք զանի ընդունել և իր ազգային առտնին տնտեսութիւն ալ բարւօքել . տիրապետական կամ կղերական բռնակալութիւնը անոր դէմ ստակ մը չարժելը ինքնին յայտնի է և ոչ ոք կրնայ բարեկարգութեան դէմ ազդեցութիւն կամ բռնութիւն և խստութիւն բանեցնել այսուհետև Բ. դրան առջև ։

Ջանացէք եղբարք Ս. Լուսաւորչին և նորին Առաքելաշաւիղ յաջորդներուն ջանքովը կազմուած մեր ազգային եկեղեցւոյն բնական

մաքրութիւնն ու բարեկարգութիւնը արդեամբ իսկ ցցնել ու յառաջ տանիլ. մանաւանդ որ անոնք որ կը բարեխնամին անոր մէջ գաղտագողի՝ և բանի մնած անարգն ու խոտանը պատուականէն զատել, և չար ու ապականիչ որոմը՝ բարի ու չնաշխարհիկ սերմէն որոշել։ Աստուծոյ բերանք սեպուելու չափ բարիք ու երախտիք պիտի ընծայած ըլլան մարդկութեան, բոլոր գրոյն։

Վստահ եմ Հոգւոյն սրբոյ շնորհիւը թէ ձեր սրտի տախտակներուն վերայ դրոշմած է անջնջելի և կը դրոշմէ խնդրողաց եւ այն սրբազան պատուէրն այսինքն է — քու ընկերդ քու անձիդ պէս սիրէ —. և զարդիս կը յիշեցնեմ ձեզ որպէս զի ջանաք նոյնը արդեամբ իսկ կատարել յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Թող ներուի ինձ ըսել՝ սիրելիք, թէ միսիոնարական դրութեան կամ լաւ ևս է ըսել անդամալուծութեան հետևողները աւելի միասեցան՝ մանաւանդ թէ վնասակար դաւանեցան ազգօգուտ բարեկարգութեան գործին քան շահաւէտ ու օգտակար. արդէն դուք ինքնին կը վկայէք խղճիւ թէ մեր ազգային եկեղեցին ի սկզբան Առաքելոց և Մարգարէից այն է Հին և Նոր Կտակարանաց հիմանը վերայ հաստատուած ըլլալով ունի հաւա-

տոյ: Հանգամանաց, աղօթք և մաղթանք, Սաղ-
մոս երգ և Շարական, նաև կարգ և կանոն Ն.ուաքելական բառ Աստուածաշունչ Ս. գրոց. վասն որոյ և զանոնք իբրև խառնամ և անպէտ բարձի թողի ընելը և միաբանաբար առնել մեր ազգային բովանդական ողջամիտ եղբարց Հեթանոսական դարձեր համարուիլը՝ աւելի նախատինք և գայթակղութիւն բերաւ մերս Հայաստանեայց եկեղեցւոյ քան փառք և ստուգութիւն ճշմարտութեան.

Զոս պատշաճ կը համարիմ յիշեցնել ձեզ այն մեծ ու երևելի բարեկարգութեան Հեղինակ Փրկչին Մերոյ Քրիստոսի այն ուշադրութեան արժանի մէկ գործը՝ որ երբ աստուածային սուրբ Տաճարը մտնելով զող ու աւազակներու այր դարձած և իր բնական դիրքէն կերպարանափոխ եղած տեսաւ, խիստ 'ի նախանձ շարժելով՝ ուրիշ բան չըրաւ, բայց եթէ նորա՝ ապականիչ պաշտօնեաները՝ դպիրներն ու փարիսեցիները՝ դուրս վռնտեց ու անոնց աթոռները շախջխեց և աղաւնածախի ու ըստոլնի սեղանները կոտրտեց. բայց տաճարին բնական մաքրութեանը և կարգադրութեան դէմ բան չխօսեցաւ. իսկ Հոգևոր պաշտօնէից՝ դէմ չէ թէ միայն ցաւելով դուրս քշեց խարազանաւ այլև անոնց բռնած ընթացքն ու վարմունքը և ամէն կերպ պըղ-

ծուլթիւննին և անփոյթել գործքերնին յանդիմանեց վրայ կարդալով անոնց, և պատուիրեց ժողովրդեան՝ որ անոնց խմորէն՝ այն է կեղծաւորութենէն կամ անհաւատութենէն ըզգուշ ու արթուն կենան և չխաբուին․ ․ ․ ։

Երեմեան եկեղեցւոյ բարեկարգիչներն ալ նոյնպէս Քրիստոսի հետևեցան Ս․ Աւետարանէն սորվելով, որոնք չէ թէ Հռոմայ եկեղեցւոյն բնական մաքրութիւնը իբրև խոտան և անպէտ ի բաց ընկեցին և Աստուածային Ս․ պաշտամունքը մերժելով մերկանդամ հեթանոսական գարշեր սեպուեցան․ քաւ լիցի, այլ նորա մէջ մնած գերիշխանութիւնը․ Աթոռը և նորա պաշտօնեաները մերժեցին և յանուն անքայութեան, պատարագի, դժոխքի և քաւարանի․ ևայլն ամպարկութեան սեղանները կործանեցին․ իսկ սուրբ Աւետարանին հոգենորոգ վարդապետութեանը համաձայն եղած ընտիր և օգտակար կանոնները հաստատ պահեցին և ազգային հաստատութիւնները (դպրոց, վանք, հիւանդանոց, եկեղեցի․ և այլն) գրաւելով իրենց բուն նպատակին սկսան ծառայեցնել․ իբրև ուսումնարան․ գիշերօթիկ դպրոց․ աղքատանոց և Ճշմարիտ Աստուածպաշտական Աղօթատեղի հաւատացելոց․ վերջապէս և գլխաւորաբար կղերին բնական պաշտօնը ի-

թիւն, յարթնութիւն, և 'ի յառաջադիմութիւն. վասն զի ունայնացան և նանրացան իրենց անհաստատ խորհրդին ու որոշման մէջ, վասն որոյ 'ի զուր և վայրապար տագնապեցան ու կը տագնապին ու կը դանդաղին փուճ և անել ազխտութեան և մոլար ճամբուն մէջ. յորմէ ուրիշ օգուտ մ'ալ չեն կրնար. քաղել բայց եթէ կորուստ անձանց և ժամանակի։

Սիրելիք, դուք ինքնին գիտէք արդէն թէ Տիրոջ փառքին և ընդհանուրին օգտին և շահուն և շինութեանը նկատմամբ եղած ուխտադրութիւնն ու երդումը որ ճշմարտութեան հետ վերաբերութիւն ունի, հաստատամտութիւն, համատարմութիւն, անյողդողդ կամք և յարատեւութիւն ջանից կը պահանջէ. իսկ անոնք որ ասանկ պարագաներու մէջ երդմնազանց գտնուեցան և կը գտնուին և ճշմարտութեան ճամբէն խոտորած են. ու կը խոտորին վատ և անհաւատ սեպուած ըլլալէ զատ, իրենց բռնած գործն ալ խախտուած և անկատար անել ճամբու և յետադէմ վիճակի մէջ կը գլորի 'ի վնաս ինքեանց և 'ի գայթակղութիւն բազմաց 'ի նախատինս երկնից ....

Ի վերջ բանիս պարտք կը սեպեմ յորդոր կարդալ ազգային ողջամիտ եղբարց հարազատացդ 'ի Քրիստոս, որպէս զի ձեր ազնիւ և փափուկ ընկերսիրական զգացմանցը համեմատ